## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին,
Հեռախոս՝ 2—52—78

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

(Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը հսկայական ոգևորությամբ տոնում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման 32-րդ տարեդարձը։

32 տարի առաջ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին, Հայաստանի աշխատավորությունը հաստատակամորեն կանգնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթական դրոշի ներքո, Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, տապալեց ամերիկա-անգլիական իմպերիալիստների և նրանց վարձկան դաշնակների արյունոտ լուծը և Հայաստանում հաստատեց սովետական իշխանություն։

Սովետական իշխանության հաստատմամբ նոր դարաշրջան բացվեց հայ ժողովրդի պատմության մեջ՝ ազգային վերածննդի և սոցիալիզմի դարաշրջանը։

1920 թվականի դեկտեմբերի 4-ին «Կեցցե Սովետական Հայաստանը» հոդվածում ընկեր Ստալինը գրել է. «Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի և դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու փաղթի մատնված Հայաստանը, բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց սովետական երկիր։

Ո՛չ Անգլիայի, հայկական շահերի «դարավոր պաշտպանի» կեղծ հավաստիացումները, ո՛չ Վիլսոնի տխրահռչակ տասնչորս կետերը, ո՛չ Ազգերի լիգայի մեծադղորդ խոստումները Հայաստանի կառավարման իր «մանդատով»—չկարողացան (և չէի՛ն կարող) փրկել Հայաստանը կոտորածից ու ֆիզիկական բնաջնջումից։ Միայն սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն»։

Անցած 32 տարիների ընթացքում սովետական Հայաստանի աշխատավորությունն անցել է պայքարի ու հաղթանակների փառավոր ուղի։ ՍՍՌՄ ժողովուրդների միասնական ընտանիքում հայ ժողովուրդը մեծ



ոգևորությամբ իրականացրեց սոցիալիզմի կառուցումը։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 32-րդ տարեդարձը ռեսպուբլիկայի աշխատավորությունը տոնում է քաղաքական ու աշխատանքային այն նոր վերելքի պայմաններում, որ առաջ են բերել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը, նրա պատմական որոշումները, համագումարում արտասանած ընկեր Ստալինի ճառը և ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատությունը։

Լենինի—Ստալինի փառապանծ պարտիայի 19-րդ համագումարն իր իմաստուն ու ոգեշնչող որոշումներով նոր պայծառ էջեր գրեց կոմունիստական հասարակակարգ կառուցելու համար սովետական ժողովրդի հերոսական պայքարի տարեգրության և միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ։

***

Սովետական Միության Կոմունիստական պարտիան հետևողականորեն իրականացնելով լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը, ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության, գիտության ու

կուլտուրայի բարձր մակարդակի հետ միասին ապահովեց տնտեսապես և կուլտուրապես հետամնաց ազգային ռեսպուբլիկաների ավելի արագ զարգացումը։ ՍՍՌՄ ժողովուրդների միջև տնտեսական ու կուլտուրական անհավասարության վերացման, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հաղթանակի փայլուն վկայություններից մեկը Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց զարգացումն է։ Ցարական Ռուսաստանի հետամնաց անկյուն հանդիսացող Հայաստանը, սովետական իշխանության տարիներին դարձավ զարգացած ինդուստրիալ և կոլտնտեսային գյուղատնտեսության ռեսպուբլիկա։ Էկոնոմիկայի բուռն զարգացման հետ միասին, Սովետական Հայաստանը վերածվեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական առաջավոր կուլտուրայի երկրի։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվեցին արդյունաբերության նոր ճյուղեր՝ էներգետիկայի, քիմիական, մետաղամշակման, մեքենաշինական հաստոցաշինական, տեքստիլ և այլն։ Ընդարձակվել և ավելի է զարգացել Սովետական Հայաստանի սննդի և թեթև արդյունա-



բերությունը։ Առաջ են եկել արտադրության նոր տեսակներ՝ շաքարի, մահուդի, բարձրորակ մետաքսյա գործվածքների, ապակու արդյունաբերությունը և այլն։

Ռեսպուբլիկայում տնտեսության և կուլտուրայի խոշոր վերելք է տեղի ունեցել առանձնապես հետպատերազմյան շրջանում։

Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ միասին հաջողությամբ կատարելով հետպատերազմյան չորրորդ հնգամյա պլանը, ռեսպուբլիկայի աշխատավորությունը բուռն ոգևորությամբ իրականացնում է կոմունիստական շինարարության հինգերորդ հնգամյա պլանի կոնկրետ խնդիրները։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքի թողարկումը 1951 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 20,5 տոկոսով։ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը 1952 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, աճել է 4,2 անգամ, ըստ որում ծանր արդյունաբերության արտադրանքը աճել է 4,6 անգամ, իսկ թեթև արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է 4,1 անգամ։

1952 թվականի պլանով նախատեսված արդյունաբերական արտադրանքի թողարկման ծավալը 1951 թվականի համեմատությամբ, կկազմի 112,7 տոկոս։ Արդյունաբերության զարգացման 1952 թվականի պլանը հաջողությամբ կատարվում է։ Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության վերջերս հրապարակած հաղորդագրությունը ցույց է տալիս, որ 1952 թվականի երրորդ եռամսյակում Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարվել է 102 տոկոսով։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականի երրորդ եռամսյակում, համեմատած 1951 թվականի երրորդ եռամսյակի հետ, աճել է 10 տոկոսով։ Կատարվել ու գերակատարվել են արտադրանքի շատ կարևոր տեսակների եռամսյակային պլանները։

Էլեկտրաէներգիայի արտադրության ընթացիկ տարվա երրորդ եռամսյակի պլանը կատարվել է 102 տոկոսով, պղնձարջասպինը՝ 110 տոկոսով, մետաղահատ հաստոցներինը՝ 104 տոկոսով, 100 կիլովատից բարձր գեներատորներինը՝ 135 տոկոսով, բրդե



գործվածքների արտադրության պլանը՝ 108 տոկոսով։

Սովետական Հայաստանում մեծ չափով զարգանում են մետալուրգիայի, մետաղամշակման արդյունաբերական ձեռնարկությունները, էլեկտրամեքենաշինությունը։ Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի կարևոր ճյուղերից մեկը հանդիսացող էլեկտրաէներգիայի արտադրությունը 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 3,3 անգամ։

Հայաստանի արդյունաբերության հետագա զարգացման համար չափազանց կարևոր նշանակություն ունի օգտակար հանածոների պաշարների ուսումնասիրումն ու հայտնաբերումը։ Հայտնաբերված են պղնձի և այլ գունավոր մետաղների նոր հանքավայրեր։ Վերջին ժամանակներս ռեսպուբլիկայում հայտնաբերվել է քարաղի հարուստ հանքավայր։

Հայկական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները մեծ ոգևորությամբ ժամկետից շուտ և բարձր որակով են կատարում կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը այդ հսկայական կառուցումներին է ուղարկում տուրբիններ,

օդային կոմպրեսորներ, գեներատորներ, էլեկտրալուսավորման արմատուրա, ավտոմեքենաների դետալներ, ավտոդողեր, ցեմենտ, տուֆ, մարմար և այլ մեքենաներ ու շինանյութեր։

Սովետական Հայաստանի արդյունաբերության և ողջ էկոնոմիկայի նոր վերելքի համար փայլուն հեռանկարներ են բացում Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։ Ստալինյան նոր հնգամյա պլանով բազմաթիվ նոր գործարաններ ու ֆաբրիկաներ են կառուցվում մեր ռեսպուբլիկայում։ Միայն Հայկական ՍՍՌ Թեթև և Սննդի արդյունաբերության մինիստրությունները ընթացիկ տարում կատարում են մի քանի տասնյակ միլիոն ռուբլու շինարարություն։

Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 32-րդ տարեդարձը խոշոր հաջողություններով է դիմավորում ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղատնտեսությունը։

Սովետական Միությունում գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման բարձր մակարդակը և հողագործության կուլ-



տուրայի աճումը լայն հնարավորություններ ստեղծեցին արտադրելու այնպիսի քանակությամբ հացահատիկ, որպիսին մեր երկիրն անցյալում երբեք չգիտեր։ ՍՍՌՄ-ը հացահատիկի արտադրությամբ առաջին տեղն է գրավում ամբողջ աշխարհում։ Ընթացիկ տարում հացահատիկի համախառն բերքը կազմեց 8 միլիարդ փութ։ Մեր երկրում հացահատիկային պրոբլեմը լուծված է հաջողությամբ, լուծված է վերջնականապես և անվերադարձ։

Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը բուռն ոգևորությամբ աշխատում է ռեսպուբլիկան սեփական արտադրության հացով ապահովելու կարևորագույն խնդիրը պատվով կատարելու համար։

Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը 1952 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 13 տոկոսով, բամբակի ցանքատարածությունն ընթացիկ տարում, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 4 տոկոսով, ծխախոտի ցանքատարածությունը՝ 7 տոկոսով։ Հացահատիկի համախառն բերքը 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է գրեթե երկու անգամ։

Հաջողությամբ կատարվել են անասնապահության զարգացման եռամյա պլանի խնդիրները։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի եռամյա պլանը կատարված է 100,2 տոկոսով։ Ոչխարների և այծերի գլխաքանակի եռամյա պլանը կատարված է 100,1 տոկոսով, ըստ որում, նրանց գլխաքանակը երեք տարվա ընթացքում աճել է 21 տոկոսով։ Անասունների գլխաքանակի աճի հետ մեկտեղ զգալիորեն բարձրացել է նաև նրանց մթերատվությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի և Միութենական կառավարության օգնության շնորհիվ ռեսպուբլիկայում տեղի է ունեցել մեքենատրակտորային կայանների թվի հետագա աճ։ Ընթացիկ տարում ռեսպուբլիկայում գործում են 53 ՄՏ կայաններ, 1950 թվականի 46-ի դիմաց։ Կոմբայնների քանակը 1950 թվականին եղած 285-ից աճեց՝ 1952 թվականին հասնելով 475-ի։ Կալսիչների քանակը 1950 թվականին եղած 378-ից 1952 թվականին հասավ 575-ի։ Սովետական Հայաստանի կոլտնտեսությունների 94 տոկոսն սպասարկվում է մեքենա-տրակտորային և մեքենաանասնաբուծական կայանների միջոցով։

Այժմ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին սպասարկում են գյուղատնտե-



սության 2500 մասնագետներ, որոնցից 1250 մարդ աշխատում են անմիջականորեն արտադրության մեջ, 280 մասնագետներ կոլտնտեսությունների նախագահներ են։ Մեծ թիվ են կազմում բարձր բերքի վարպետները, որոնք ճշտությամբ կենսագործում են առաջավոր ագրոտեխնիկայի պահանջները։

Հաջողությամբ իրականացվում է ռեսպուբլիկայի անասնապահական ֆերմաների սարքավորումն ու մեքենայացումը։ Արդեն 52 ֆերմաներում դրված են անասուններբ ջրելու ավտոմատ սարքեր։ 30 ֆերմաներում կատարվում է կովերի էլեկտրակիթ, 278 ֆերմաներում սարքավորված են կեր մշակող մեքենաներ։

ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ 19-րդ համագումարի դիրեկտիվներում նշված է, որ հողագործությունը պետք է դառնա է՛լ ավելի արդյունավետ և որակյալ՝ առաջավոր տեխնիկայի և ագրոկուլտուրայի արմատավորման հիման վրա։

Հայաստանի կոլտնտեսային գյուղի աշխատավորները իրենց ջանքերը չեն խնայում գյուղատնտեսության զարգացման բնագավառում պարտիայի 19-րդ համագու-

մարի առաջադրած խնդիրները հաջողու-
թյամբ կենսագործելու համար։

***

Սոցիալիստական արդյունաբերության և
գյուղատնտեսության արտադրանքի աճի հի-
ման վրա անշեղորեն բարձրանում է ռես-
պուբլիկայի աշխատավորների նյութական
բարեկեցությունը։ Ընկեր Ստալինը «Սո-
ցիալիզմի տնտեսական պրոբլեմները
ՍՍՌՄ-ում» աշխատության մեջ հայտնագոր-
ծել և կլասիկ կերպով սահմանել է սոցիա-
լիզմի հիմնական տնտեսական օրենքը.

«Սոցիալիզմի հիմնական տնտեսական
օրենքի էական գծերն ու պահանջները,—
սովորեցնում է ընկեր Ստալինը,— կարելի
էր ձևակերպել մոտավորապես այսպես. ամ-
բողջ հասարակության նյութական և կուլ-
տուրական հարաճուն պահանջմունքների
առավելագույն բավարարման ապահովում՝
բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սո-
ցիալիստական արտադրության անընդհատ
աճման ու կատարելագործման միջոցով»։

Մեր պարտիան և սովետական կառավա-
րությունը հետևողականորեն վարում են աշ-
խատավորների նյութական բարեկեցության և
կուլտուրական կյանքի մակարդակի բարձ-
րացման քաղաքականությունը։



Գների իջեցման ստալինյան քաղաքակա-
նության իրականացման շնորհիվ, մասսա-
յական սպառման ապրանքների գների ընդ-
հանուր մակարդակը ՍՍՌՄ-ում վերջին հինգ
տարում իջել է երկու անգամ։ Այդ նշանա-
կում է, որ այսօր սովետական սպառողը 50
ռուբլով կարող է գնել այնքան ապրանքներ,
որքան հինգ տարի առաջ նա գնում էր 100
ռուբլով։

Աշխատավորների բնակարանային պայ-
մանների հետագա բարելավման նպատա-
կով, ռեսպուբլիկայում տարեց-տարի ընդ-
լայնվում է բնակարանային շինարարությու-
նը։ Այս տարի նախատեսված է շահագործ-
ման հանձնել 83 հազար քառակուսի մետր
բնակելի տարածություն, չհաշված 120 հա-
զար քառակուսի մետր տարածությամբ 3000
տները, որոնք կառուցվում են անհատական
վարկավորման կարգով։

Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկ-
տիվների հիման վրա ռեսպուբլիկայում հա-
ջողությամբ իրականացվում է պարտադիր
յոթնամյա ուսուցումը գյուղական վայրերում
և տասնամյա պարտադիր ուսուցումը քա-
ղաքներում։ Ներկայումս ռեսպուբլիկայի
տարրական, յոթնամյա և միջնակարգ դպ-

ոցներում սովորում են 295.502 աշակերտ և աշխատում են 15.987 ուսուցիչ։

Սովետական կարգեր հաստատվելուց առաջ Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, այժմ ռեսպուբլիկայում գործում է 17 ԲՈՒՀ։ Ստացիոնար ԲՈՒՀ-երում սովորողների թիվը հասել է մոտ 12.000 մարդու։ Սովետական Հայաստանում 1000 մարդուն 16 անգամ ավելի շատ ուսանող է ընկնում, քան ամերիկյան իմպերիալիզմի լծի տակ գտնվող Թյուրքիայում։

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան միավորում է ավելի քան 30 գիտական հիմնարկներ։ Ակադեմիայի սիստեմում աշխատող շատ գիտնականների անունները հայտնի են ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։

Աննախընթաց զարգացման է հասել ժողովրդական առողջապահության գործը։ Եթե Հայկական ՍՍՌ-ում 483 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, ապա Եգիպտոսում 4.350 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, Ֆրանսիայում՝ 1000 մարդուն, Հոլանդիայում՝ 1160 մարդուն։ Սովետական Հայաստանի բնակչությունը բուժօգնությամբ ապահովված է մոտ 9 անգամ ավելի լավ, քան Թյուրքիայի բը-



նակչությունը և 23 անգամից ավելի՝ քան Իրանի բնակչությունը։

Էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառներում Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողությունները հիմնված են ամբողջ սոցիալիստական շինարարությունը ղեկավարող Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականության վրա։

Հանրապետության բերելով նվաճումների ու հաղթանակների արդյունքները, հայ ժողովուրդն իր անհուն երախտագիտությունն ու նվիրվածությունն է հայտնում կոմունիստական պարտիային, Սովետական կառավարությանը և ժողովուրդների իմաստուն առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար մեծ Ստալինին։

***

Հայ ժողովուրդն իր ազատության և երջանկության 32-րդ տարին տոնում է Սովետական Միության միջազգային հեղինակության հսկայական աճման, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ճակատի ուժերի անընդհատ ամրապնդման ու հզորացման պայմաններում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում արտա-

սանած իր ճառում խոսելով համաշխարհային ռևոլուցիոն և բանվորական շարժման սովետական «հարվածային բրիգադայի» միայնակության մասին, մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը, ընկեր Ստալինը մատնանշում է. «Այժմ դրությունը միանգամայն այլ է։ Այժմ, երբ Չինաստանից ու Կորեայից մինչև Չեխոսլովակիա ու Հունգարիա երևան են եկել նոր «հարվածային բրիգադաներ» ի դեմս ժողովրդա-դեմոկրատական երկրների,— այժմ մեր պարտիայի համար ավելի է հեշտացել պայքարելը, և գործն էլ ավելի լավ է գնում»։

Սովետական Միության հետ միասին և նրա անշահախնդիր օգնությամբ մեծ հաջողություններ են ձեռք բերել նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները։

Ընթացիկ տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, կավելանա Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Ռումինիայում, Հունգարիայում և Բուլղարիայում 22—25 տոկոսով, Ալբանիայում՝ ավելի քան 80 տոկոսով։ Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրությունը մինչև 1952 թվականը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 36 տո-



կոսով, Չինաստանում արդյունաբերական արտադրանքի ծավալը 1951 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 2 անգամ։ Հողային ռեֆորմն իրականացվել է 420 միլիոն բնակչություն ունեցող տերիտորիայի վրա։

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունը և ժողովրդական դեմոկրատիայի երկրները ընթանում են խաղաղ, ստեղծագործական շինարարության, ժողովուրդների նյութական դրության անշեղ բարձրացման ուղիով, իմպերիալիզմի լագերի բոլոր երկրների էկոնոմիկան միլիտարիզացիայի է ենթարկվում և թպրտում է կապիտալիզմի ավելի ու ավելի խորացող ընդհանուր ճգնաժամի ու շարունակաբար կրկնվող տնտեսական ճգնաժամերի ճիրաններում։

Կանգնելով սպառազինությունների մրցավազքի ուղու վրա, կապիտալի երկրները կրճատում են քաղաքացիական արտադրությունը, որով ավելի են խորացնում տնտեսական ճգնաժամը։ ԱՄՆ-ի 1952—1953 թ. թ. ամբողջ բյուջեի 74 տոկոսը գործադրվում է ուղղակի ռազմական ծախսերի վրա։

Օր-ավուր վատթարանում է աշխատավոր մասսաների կենսամակարդակը իմպերիալիզմի երկրներում։ Հայտնի է, որ Տրումենն

իր պրեզիդենտության տարիներին հավաքել է ավելի շատ հարկեր, քան ԱՄՆ-ի նախորդ բոլոր պրեզիդենտները միասին վերցրած։ Ֆրանսիայում և Իտալիայում բանվորների ռեալ աշխատավարձը 1952 թվականին նախապատերազմյանի կեսից էլ պակաս է։

Աշխատավորության լայն մասսաների նյութական դրության անընդհատ վատթարացման հետևանքով աճում է դժգոհությունը և ուժեղանում է բնակչության պայքարն իմպերիալիստական կառավարությունների քաղաքականության դեմ։ Խիստ կերպով սրվում են դասակարգային հակասությունները իմպերիալիստական բուրժուազիայի և աշխատավորության միջև։ Կապիտալիստական երկրներում աշխատավորների պայքարը հանուն խաղաղության ու դեմոկրատիայի, ընդդեմ իմպերիալիստական ճնշման ու պատերազմի, գլխավորում են կոմունիստական, բանվորական ու դեմոկրատական պարտիաները։

Իմպերիալիզմի ճամբարի դրությունը բարդանում է նրանով, որ ամերիկյան իմպերիալիզմի տնտեսական քաղաքականությունն է՛լ ավելի է սրում հակասությունները Միացյալ Նահանգների ու մնացած կապիտալիստական պետությունների միջև։



Համաշխարհային կապիտալիստական սիստեմի դրությունը ծանրանում է նաև գաղութային ու կախյալ երկրներում ծավալված ազգային-ազատագրական շարժման նոր վերելքով։ Ազգային-ազատագրական շարժման լայն թափի մասին է խոսում Վյետնամի, Բիրմայի, Մալայայի, Ֆիլիպինների, Ինդոնեզիայի, Հնդկաստանի, Եգիպտոսի և մյուս ժողովուրդների պայքարը։

Ստեղծված ծանր դրությունից դուրս գալու ելքը իմպերիալիստները որոնում են նոր համաշխարհային պատերազմի սանձազերծման մեջ։

«Այժմ ամերիկյան իմպերիալիզմը հանդես է գալիս արդեն ոչ միայն որպես ագրեսոր,— նշեց ընկ. Գ. Մ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում,— այլև որպես համաշխարհային ժանդարմ, որը ջանում է ազատությունը խեղդել ամենուրեք, որտեղ միայն հնարավոր է, և արմատավորել ֆաշիզմը»։

Նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքի դեմ ծավալվում է խաղաղության կողմնակիցների հզոր շարժումը, որը գլխավորում է խաղաղության մեծ դրոշակակիր Սովետական Միությունը։ Սովետական պետության խաղաղասիրական քաղա-

քականությունը իրականացվում է նրա գոյության առաջին իսկ օրվանից։

Անշեղորեն իրականացնելով խաղաղությունը պաշտպանելու և ամրապնդելու քաղաքականությունը, Սովետական Միությունը միևնույն ժամանակ հաշվի է առնում նոր ագրեսիայի սպառնալիքի առկայությունը և ամրապնդում է իր պաշտպանունակությունը՝ հարկ եղած դեպքում ագրեսիային հակահարված տալու համար։

«Բոլոր հիմքերը կան կարծելու,— նշեց ընկ. Գ. Մալենկովը ՍՄԿՊ 19-րդ համագումարում,— որ երրորդ համաշխարհային պատերազմը առաջ կբերի կապիտալիստական համաշխարհային սիստեմի փլուզումը»։

***

Պարտիայի 19-րդ համագումարն իր պատմական որոշումներում սահմանեց պարտիական, սովետական, տնտեսական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրները մեր երկրում կոմունիզմի կառուցման նպատակին ուղղված ընկեր Ստալինի նախագծումները կենսագործելու համար։

Կոմունիստական շինարարության խնդիրները հաջող իրագործելու նպատակով, ան-



հրաժեշտ է, որպեսզի Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները մոբիլիզացնեն իրենց ուժերը՝ հինգերորդ հնգամյա պլանի խնդիրները պատվով կատարելու համար։

Սոցիալիստական արդյունաբերության աշխատողները պետք է է՛լ ավելի համառորեն պայքարեն արտադրական պլանների կատարման ու գերակատարման համար, աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը բարձրացնելու, ինքնարժեքն իջեցնելու համար։

Գյուղատնտեսության ասպարեզում գլխավոր խնդիրն է գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումը, հանրային անասունների գլխաքանակի հետագա ավելացումը՝ նրա մթերատվության զգալի աճի հետ մեկտեղ, հողագործության ու անասնաբուծության համախառն և ապրանքային արտադրանքի ավելացումը, կոլտնտեսությունների տնտեսական-կազմակերպական հետագա ամրապնդումը։

Իդեոլոգիական աշխատանքի բնագավառում անհրաժեշտ է բոլոր ջանքերն ուղղել սովետական մարդկանց հայրենասիրական, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակե-

յու և կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության միջից իսպառ վերացնելու հարցերին։

«Մեր հզոր հայրենիքը գտնվում է իր ուժերի ծաղկման շրջանում և ընթանում է դեպի նոր հաջողություններ։ Մենք ունենք անհրաժեշտ ամեն ինչ լիակատար կոմունիստական հասարակակարգ կառուցելու համար»։ Պարտիայի 19-րդ համագումարին ընկ. Մալենկովի տված հաշվետու զեկուցման այս խոսքերը սովետական ժողովրդին ոգեշնչում են հայրենասիրական վեհ զգացմունքով կոմունիստական պարտիայի առաջադրած մեծագույն խնդիրները պատվով կատարելու համար։

Սովետական ժողովուրդը համախմբված կոմունիստական պարտիայի շուրջը, զինված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումներով, կոմունիզմի հանճարեղ ճարտարապետ ընկեր Ստալինի առաջնորդությամբ վստահորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմի հաղթանակը։

---



# ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

✪ Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի աճը 1952 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, կազմել է 223 տոկոս, այդ թվում արտադրության միջոցների («Ա» խումբ) արտադրությունը՝ 267 տոկոս, սպառման առարկաների («Բ» խումբ) արտադրությունը՝ 156 տոկոս։

Հինգերորդ հնգամյակի վերջում արդունաբերական արտադրության մակարդակը կբարձրանա մոտավորապես 70 տոկոսով։ Ամբողջ համախառն արտադրանքի տարեկան աճի միջին տեմպը նկատի է առնվում մոտավորապես 12 տոկոսով, ըստ որում արտադրության միջոցների («Ա» խումբ) արտադրության աճի տեմպը սահմանվում է 13 տոկոսի չափով, սպառման առարկաներինը («Բ» խումբ)՝ 11 տոկոսի չափով։

✪ Արտադրության միջոցներ արտադրող արդյունաբերությունը 1951 թվականին նախապատերազմյան 1940 թվականի մակար-

դակը գերազանցեց 2,4 անգամ, իսկ 1952 թվականին այդ մակարդակը կգերազանցի 2,7 անգամ։ 1952 թվականի վերջում կարտադրվի 25 միլիոն տոննա չուգուն, կամ 70 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, 35 միլիոն տոննա պողպատ, կամ մոտավորապես 90 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, 27 միլիոն տոննա գլանվածք, կամ 2 և կես անգամ ավելի շատ, քան 1940 թվականին, 300 միլիոն տոննա ածուխ, կամ 80 տոկոսով ավելի շատ, քան 1940 թվականին, 47 միլիոն տոննա նավթ, կամ 50 տոկոսով ավելի շատ, քան 1940 թվականին, 117 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն 2,4 անգամ ավելի, քան 1940 թվականին, մեքենաներ և սարքավորում կարտադրվի երեք անգամ շատ, քան 1940 թվականին։

✪ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, արտադրության միջոցներ արտադրող արդյունաբերությունը կաճի. չուգուն՝ 76 տոկոսով, պողպատ՝ 62 տոկոսով, գլանվածք՝ 64 տոկոսով, ածուխ՝ 43 տոկոսով, նավթ՝ 85 տոկոսով, էլեկտրաէներգիա՝ 80 տոկոսով, շոգետուրբիններ՝ 2,3 անգամ, հիդրոտուրբիններ՝ 7,8 անգամ, շոգեկաթսաներ՝ 2,7 անգամ, մետալուրգիական սար-



քավորում՝ 85 տոկոսով, նավթային ապարատուրա՝ 3,5 անգամ, մետաղահատ խոշոր հաստոցներ՝ 2,6 անգամ։

✪ Հինգերորդ հնգամյակում զգալիորեն ընդլայնվելու է գլանվածքի դեֆիցիտային տեսակների ասորտիմենտը։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելանալու է այդ տեսակների արտադրությունը հետևյալ չափերով. պողպատաթերթի արտադրությունը՝ մոտավորապես 80 տոկոսով, մանր-տեսակավոր պողպատինը և կատանկայինը՝ 2,1 անգամ, չժանգոտող պողպատաթերթինը՝ 3,1 անգամ։

✪ Նոր հնգամյակում, չորրորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանալու է առաջնական կարողությունների գործարկումը հետևյալ չափերով. չուգունի գծով՝ մոտավորապես 32 տոկոսով, պողպատի գծով՝ 42 տոկոսով, գլանվածքի գծով՝ առնվազն 2 անգամ, կոքսի գծով՝ 80 տոկոսով, երկաթի հանքաքարի գծով՝ 3 անգամ։

Հարավի, Ուրալի, Սիբիրի, Կենտրոնի և Հյուսիս-Արևմուտքի շրջանների սև մետալուրգիայի զարգացման հետ միասին, մետալուրգիական արդյունաբերության հետագա զարգացում տեղի կունենա նաև Անդրկովկասում։

✪ Հինգերորդ հնգամյակում, չորրորդ հնգամյակի համեմատությամբ, զգալիորեն ընդլայնվելու է նաև գունավոր մետաղների արտադրությունը։ Այդ մետաղների արտադրությունն ավելանալու է հետևյալ չափով. ռաֆինացված պղնձինը՝ մոտավորապես 90 տոկոսով, կապարինը՝ 2,7 անգամ, ալյումինինը՝ առնվազն 2,6 անգամ, ցինկինը՝ 2,5 անգամ, նիկելինը՝ 53 տոկոսով, անագինը՝ 80 տոկոսով։

✪ Հնգամյակի ընթացքում մեր երկրում էլեկտրակայանների ընդհանուր կարողությունն ավելանալու է մոտավորապես երկու անգամ, հիդրոէլեկտրակայաններինը՝ երեք անգամ։ Գործարկվելու են խոշոր հիդրոկայաններ. Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը՝ 2.100 հազար կիլովատ կարողությամբ, ինչպես նաև Կամայի, Գորկու, Մինգեչաուրի, Ուստ-Կամենոգորսկի և այլ էլեկտրակայաններ՝ 1.916 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ։

Շինարարական մեծ ծավալ կստանան Ստալինգրադյան և Կախովկայի հիդրոէլեկտրակայանների կառուցումները, կսկսվի նոր հիդրոէլեկտրակայանների շինարարություն՝ Չեբոկսարիի հիդրոէլեկտակայանը՝ Վոլգայի վրա, Վոտկինսկինը՝ Կամայի վրա, Բուխտարմինսկինը՝ Իրտիշի վրա։



✪ Հինգերորդ հնգամյակի ընթացքում սարքավորման արտադրությունը ավելացվելու է ավելի քան 2 անգամ, բարձր ճշգրտության հաստոցներինը՝ մոտավորապես 2 անգամ, դարբնա-մամլակային ծանր մեքենաներինը՝ 8 անգամ, կառավարման և վերահսկողության սարքերի թողարկումը՝ մոտավորապես 2,7 անգամ։ Քիմիական սարքավորման արտադրության աճը սահմանվում է մոտավորապես 3,3 անգամ։

✪ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, բարձրացվելու է ծովային նավատորմի համար բեռնատար նավերի և տանկերների թողարկումը մոտավորապես 2,9 անգամ, գետային մարդատար նավերինը՝ 2,6 անգամ և ձկնորսական նավատորմի նավերինը՝ 3,8 անգամ։

✪ Փայտասղոցման գործարանների կարողությունը նոր հնգամյակի ընթացքում, չորրորդ հնգամյակի համեմատությամբ, կավելանա մոտավորապես 8 անգամ։ Այդ ժամանակամիջոցում կահույքի արտադրությունն ավելանալու է առնվազն 3 անգամ։

✪ Արտադրության միջոցների արտադրության և գյուղատնտեսության արտադրանքի աճը լայն պայմաններ է ստեղծել թեթև արդյունաբերության զարգացման համար, որի արտադրանքը 1952 թվականին, 1940 թվա-

կանի համեմատությամբ, կավելանա մոտավորապես 60 տոկոսով։ 1952 թվականին կարտադրվեն՝ ավելի քան 5 միլիարդ մետր բամբակե գործվածքներ, կամ մոտավորապես 30 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, գրեթե 190 միլիոն մետր բրդե գործվածքներ, կամ մոտավորապես 60 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, 218 միլիոն մետր մետաքսե գործվածքներ, կամ 2,8 անգամ ավելի, քան 1940 թվականին, 250 միլիոն զույգ կաշվե-կոշկեղեն, կամ մոտավորապես 20 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, 125 միլիոն զույգ ռետինե կոշիկեղեն, կամ 80 տոկոսով ավելի, քան 1940 թվականին։

✪ Հինգերորդ հնգամյակում, չորրորդ հնգամյակի համեմատությամբ, բամբակե գործվածքների արտադրությունը ավելանալու է 61 տոկոսով, բրդե գործվածքներինը՝ 54 տոկոսով, կաշվե-կոշկեղենինը՝ 55 տոկոսով։

✪ Մեծ չափերով մեծացվելու է տևական օգտագործման առարկաների՝ ավտոմոբիլների, մոտոցիկլների, հեծանիվների, ռադիոընդունիչների, տելեվիզորների, կահույքի, սառնարանների, երաժշտական գործիքների արտադրությունը։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԴՊՐՈՑԸ

Քաղաքական ագիտացիան իդեոլոգիական աշխատանքի կարևոր օղակներից մեկն է։ Մասսաների մեջ ագիտացիոն աշխատանքի լայն ծավալումը, նրա իդեական մակարդակի բարձրացման հարցերը հանդիսանում են պարտիական-քաղաքական աշխատանքի բարելավման անհրաժեշտ պայմաններից մեկը։ Այդ տեսակետից էլ որքան լավ կազմակերպվի աշխատանքը ագիտատորների հետ, այնքան բարձր կլինի քաղաքական ագիտացիայի մակարդակը։

Պարտիայի Սպանդարյանի ռայկոմը մեծ ուշադրություն է դարձնում ագիտատորների կադրերի ընտրության, նրանց տեսական մակարդակի բարձրացման և դաստիարակման հարցերին։ Ռայոնական կոմիտեին կից երկու տարի է, ինչ գործում է ագիտատորների դպրոցը։ Դպրոցում ընդգրկված են ռայոնի արդյունաբերական ու շինարարական ձեռնարկություններից 100 հոգի, որոնք ներգրավված են ագիտացիոն աշխատանքի մեջ։

Ռայկոմի ագիտատորների դպրոցը ամսա-

կան ունենում է երկու պարապմունք՝ երկուական ժամվա տևողությամբ, որտեղ թեմատիկ պլանի համաձայն նրանց համար կարդացվում են դասախոսություններ, անց են կացվում տեսական զեկուցումներ և գործնական պարապմունքներ։

Թեմատիկ պլանում, որ հաստատվել է ռայկոմի բյուրոյի նիստում, մեծ տեղ է հատկացված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի նյութերի, համագումարի եզրափակիչ նիստում ընկեր Ստալինի արտասանած պատմական ճառի, ընկեր Ստալինի՝ «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատության ուսումնասիրությանը։ Թեմատիկ պլանում մեծ տեղ է տրված նաև մեր պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումների, Սովետական պետության ստալինյան արտաքին քաղաքականության, միջազգային դրության հարցերի, ռեսպուբլիկայի և ռայոնի առջև դրված տնտեսական, կուլտուրական շինարարության խնդիրների պարզաբանմանը, ագիտատորներին մեթոդական օգնություն ցույց տալու հարցերին։

Դպրոցը հանդիսանում է ագիտատորների



հետ տարվող աշխատանքների առավել կոնկրետ և արդյունավետ ձևերից մեկը։

Այս ուսումնական տարում դպրոցն արդեն ունեցել է մի քանի պարապմունք։ Առաջին պարապմունքում պարտիայի ռայկոմի քարտուղար ընկ. Ա. Մանասերյանը ունկնդիրներին պարզաբանեց, թե որոնք են ագիտատորների խնդիրները 19-րդ համագումարի որոշումները բանվորների և ծառայողների մեջ մասսայականացնելու, այդ որոշումները նրանց սեփականությունը դարձնելու, աշխատավորների ուշադրությունը սրելու նոր բարձր պարտավորություններ ստանձնելու, ստանձնած պարտավորությունները կատարելու և գերակատարելու համար։ Նա ընդգծեց որ ագիտատորները չպետք է սահմանափակվեն համագումարի նյութերի սոսկ ընթերցումով, այլ դրանք պետք է կապեն տվյալ ձեռնարկության առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Խոսելով ՍՍՌՄ զարգացման նոր հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների մասսայականացման գործում ագիտատորների խնդիրների մասին, զեկուցողը նշեց, որ ագիտատորը տվյալ ձեռնարկությու-

նից, ցեխից վերցրած կոնկրետ օրինակների և փաստերի միջոցով պետք է յուրաքանչյուր բանվորի գիտակցությանը հասցնի, որ ըստանձնած պարտավորությունների կատարումն ու գերակատարումը սովետական հայրենասիրության վառ արտահայտություն է և ավանդ՝ նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու գործում։

Երևանի Գինու կոմբինատի լցման ցեխի բանվորները ամեն անգամ հաճույքով են դիմավորում ագիտատոր ընկ. Վ. Մավյանին, որը պարապմունքների ժամանակ հմտորեն օգտագործում է ագիտատորի դպրոցում ըստացած փորձն ու գիտելիքները։ Նա արդեն անց է կացրել մոտ 21 պարապմունք՝ նվիրված պարտիայի 19-րդ համագումարի նյութերի մասսայականացմանը։

Ընկ. Մավյանը իր զրույցների ընթացքում օգնում է բանվորներին և նրանց հետ միասին կոնկրետ միջոցառումներ է նշում աշխատանքում եղած թերությունները հայտնաբերելու և լիկվիդացնելու, բոլոր բանվորներին աշխատանքի նկատմամբ կո-



մունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու համար։

Ագիտատորի նման զրույցների արդյունքը արտահայտվում է նրանում, որ ցեխի բոլոր բանվորները կատարում և գերակատարում են իրենց ստանձնած պարտավորությունները։ Ծավալելով սոցիալիստական մրցությունը, ցեխը հոկտեմբեր ամսվա պլանը կատարեց 116,8%-ով, միաժամանակ տնտեսելով մեծ քանակությամբ նյութեր։

Ագիտատորների դպրոցը հանդիսանում է ռայոնում ագիտատորներին օգնություն կազմակերպելու լավագույն ձևերից մեկը և մեծ չափով նպաստում է ռայոնի աշխատավորության և բնակչության շրջանում տարվող քաղաքական ագիտացիայի բարելավմանը։

Լ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

# ԻՆՉՊԵՍ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում Համ. Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին ընկ. Գ. Մ. Մալենկովի հաշվետու զեկուցման կարևոր հարցերից մեկը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրներն են։ Ահա թե ինչու գյուղական ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ բազմակողմանիորեն մասսայականացնել ընկ. Մալենկովի զեկուցման ամեն մի ենթաթեմա, որպեսզի յուրաքանչյուր ունկնդիր հասկանա, թե կոնկրետ ինչպիսի խնդիրներ են դրվում իր առջև համագումարի որոշումներն անթերի կենսագործելու համար։

Ընկ. Մալենկովի զեկուցման՝ գյուղատնտեսության խնդիրներին վերաբերող հատվածի մասսայականացմանը կարելի է նվի-



րել մի քանի ագիտզրույց։ Առաջին զրույցի ժամանակ ագիտատորը պետք է ցույց տա հետպատերազմյան տարիներին գյուղատնտեսության վերականգնման ու զարգացման համար պարտիայի ու կառավարության ձեռք առած միջոցառումները, որոնք ապահովեցին ցանքատարածությունների ընդարձակման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և հացահատիկի պրոբլեմի լուծման կարևորագույն խնդիրների հաջող կատարումը։

Ագիտատորը պետք է ցույց տա գյուղատնտեսության մեքենայացման բնագավառում ձեռք բերված խոշոր հաջողությունները և այն նոր խնդիրները, որոնք հինգերորդ հնգամյակի տարիներին դրվում են կոլտնտեսությունների, սովխոզների ու մեքենատրակտորային կայանների առջև։

Ագիտատորն իր հետագա զրույցները կարող է նվիրել անասնաբուծության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողություններին և անասնաբուծության զարգացման հետագա խնդիրներին, իրրիգացիոն շինարարության, դաշտապաշտպան անտառաշերտերի ստեղծման, ճահճոտ հողերի չորացման, նոր վիթխարի հիդրոէլեկտրա-

կայանների, ոռոգիչ սիստեմների կա-
ռուցման և ռոռգման նոր սիստեմի իրա-
կանացման հարցերին, որոնք երկրին ընդ-
միշտ կապահովեն եղանակների պատահա-
կանություններից։ Ագիտատորը պետք է զը-
րույցներ անցկացնի նաև գյուղատնտեսու-
թյան ղեկավարման հարցերի մասին և
ցույց տա այդ գործում եղած սխալ-
ներն ու թերությունները ու դրանց վե-
րացման միջոցառումները, որոնց մասին
պարզորոշ խոսել է ընկ. Մալենկովը։

Այս զրույցներից յուրաքանչյուրի ժամա-
նակ ագիտատորը մանրամասնորեն պետք է
ընթերցի կամ պարզ ու հասկանալի լեզ-
վով պատմի ընկ. Մալենկովի զեկուցման
համապատասխան տեղերը։ Ընթերցանու-
թյան կամ զրույցի ժամանակ ագիտատորը
պետք է հետևի, որ ունկնդիրները լրիվ ծա-
նոթանան այն բոլոր խնդիրներին, որոնց
մասին խոսում է ընկ. Մալենկովը։ Այդ
բանին հասնելու համար լավ կլինի, որ ա-
գիտատորն օգտագործի նաև ցուցադրական
ագիտացիայի հարուստ ձևերը։ Այսպես, ա-
ռաջին զրույցի ժամանակ ագիտատորը կա-
րող է օգտագործել ընկ. Մալենկովի զեկու-
ցումից վերցրած այսպիսի քաղվածքներ.
«Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների



ցանքատարածությունները 1952 թվականին
նախապատերազմյան մակարդակը գերա-
զանցեցին 5,3 միլիոն հեկտարով», «Ընթա-
ցիկ 1952 թվականին հացահատիկի համա-
խառն բերքը կազմեց 8 միլիարդ փութ», «Հա-
ցահատիկային պրոբլեմը, որ առաջ համար-
վում էր ամենասուր և ամենալուրջ պրոբլեմը,
լուծված է հաջողությամբ, լուծված է վերջ-
նականապես և անվերադարձ կերպով», «Մե-
քենա-տրակտորային կայաններում և սով-
խոզներում տրակտորային պարկի ընդհա-
նուր կարողությունը, նախապատերազմյան
մակարդակի համեմատությամբ, ավելացել է
59 տոկոսով և կոմբայններինը՝ 51 տոկո-
սով»։ Այս և նման մի շարք քաղվածքներ
կարելի է մեծ տառերով գրել և փակցնել
աչքի ընկնող տեղերում, որը կլինի տպավո-
րիչ և կօգնի ագիտատորին՝ ունկնդիրներին
ավելի լավ ծանոթացնելու մեր գյուղատըն-
տեսության նվաճումներին։

Կամ խոսելով նոր հնգամյակում գյուղա-
տնտեսական կուլտուրաների բերքատվու-
թյան բարձրացման մասին, լավ կլինի, որ
ագիտատորը օգտագործի այնպիսի դիա-
գրամա, որը ցույց կտա, որ հինգերորդ
հնգամյակի վերաբերյալ պարտիայի 19-րդ
համագումարի դիրեկտիվներում նախատես-

ված է հնգամյակի ընթացքում հացահատիկի համախառն արտադրանքն ավելացել 40—50 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 55—65 տոկոսով, բամբակի հումքինը՝ 55—65 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 65—70 տոկոսով, արևածաղկինը՝ 50—60 տոկոսով, կարտոֆիլինը՝ 40—45 տոկոսով և կերային կուլտուրաների արտադրության աճը՝ մոտավորապես 2—3 անգամ։

Այս բոլորի հետ միասին անհրաժեշտ է օգտագործել ընկ. Մալենկովի զեկուցումից վերցրած այսպիսի լոզունգ. «Բերքատվության բարձրացումը գլխավոր խնդիրն է հողագործության մեջ»։ Ագիտատորը պետք է ընդգծի և ամեն մի կոլտնտեսականի ու գյուղատնտեսության մեխանիզատորի սեփականությունը դարձնի, որ «Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է բարձրացնել դաշտային աշխատանքների որակը և կրճատել դրանց կատարման ժամկետները, բարելավել տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների օգտագործումը, ավարտել հողագործության հիմնական աշխատանքների մեքենայացումը, ապահովել կոլտնտեսություններում և սովխոզներում ցանքաշրջանառությունների ամենաարագ յուրացումը՝ բազմամյա խոտա-



բույսերի ցանքի հետ միասին, բարելավել սերմնաբուծության գործը, ամենուրեք արմատավորել հողի մշակման ճիշտ սիստեմը, ավելացնել պարարտացումները և ջրովի հողերի քանակը։ Պետք է ուժեղացնել մեքենա-տրակտորային կայանների կազմակերպող դերը կոլտնտեսություններում, բարձրացնել ՄՏ կայանների պատասխանատվությունը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու համախառն բերքի պլանների կատարման և անասնաբուծության զարգացման համար» (Մալենկով)։

Եթե առաջին զրույցի ժամանակ ագիտատորն ընթերցել է ընկեր Մալենկովի զեկուցումից, ապա երկրորդ զրույցի ժամանակ նա կարող է պատմել անասնաբուծության զարգացման գործում ձեռք բերված հաջողությունների և անասնաբուծության զարգացման հետագա խնդիրների մասին, օգտագործելով ագիտացիոն աշխատանքի հնարավոր ձևերն ու մեթոդները։

Մյուս պարապմունքի ժամանակ ագիտատորը պետք է ընթերցի ընկ. Մալենկովի զեկուցումից ու պարզ կերպով ցույց տա այն խոշոր աշխատանքները, որ Սովետական Միությունում կատարվել ու կատարվելու են

խորհրդացիոն շինարարության, դաշտապաշտպան անտառաշերտերի ստեղծման, ջրանցքների, ջրամբարների, լճակների, ոռոգիչ սիստեմների կառուցման, ճահիճների ու ճահճակալած հողերի չորացման գործում։ Լավ կլինի, այդ առթիվ ընկ. Մալենկովի զեկուցումից համապատասխան քաղվածքներ վերցնել և դրանք մեծ ու գեղեցիկ տառերով գրել-փակցնել աչքի ընկնող տեղերում։ Կարելի է գրել այսպիսի քաղվածքներ. «Ոռոգիչ խոշոր սիստեմներ են կառուցվում Անդրկովկասի ռեսպուբլիկաներում, որտեղ փաստորեն ոռոգվող հողերի տարածությունը, այդ աշխատանքների շնորհիվ, մոտ տարիներս կավելանա ավելի քան մեկ ու կես անգամ», «Վերջին երեք և կես տարվա ընթացքում կոլտնտեսությունները, սովխոզները և անտառային տնտեսությունները դաշտապաշտպան անտառաշերտեր են տնկել 2,6 միլիոն հեկտար տարածության վրա և կառուցել 12 հազարից ավելի լճակներ ու ջրամբարներ». կամ «Գյուղատնտեսության համար մեծ հեռանկարներ են բացվում Վոլգայի, Դոնի, Դնեպրի և Ամու-Դարյայի վրա վիթխարի հիդրոէլեկտրակայանների ու ոռոգիչ սիստեմների կառուցման կապակցությամբ և Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի գործարկման կապակցությամբ»։



Խոսելով գյուղատնտեսության զարգացման խնդիրների մասին, անհրաժեշտ է, որ ագիտատորները իրենց զրույցների ընթացքում աշխատավորներին ծանոթացնեն նաև Սովետական Հայաստանի գյուղատնտեսության բուռն զարգացման նվաճումներին, որոնք ամփոփվեցին ՀԿՊ 16-րդ համագումարում։ Պարտիայի 19-րդ համագումարում արտասանած իր ճառում Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի քարտուղար ընկ. Գր. Հարությունյանը ասաց, որ «Ռեսպուբլիկայում հացահատիկային կուլտուրաների տարածությունը 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ ավելացել է 13 տոկոսով, իսկ հացահատիկի ընդհանուր բերքը գրեթե 2 անգամ, այդ թվում ցորենի բերքն ավելացել է 2,4 անգամ»։ Այս և մյուս հաջողությունների մասին պետք է իմանա մեր ամեն մի աշխատավոր, որը նոր ուժ ու եռանդ կներշնչի նրանց։

Վերը նշված ձևով կարելի է մասսայականացնել ընկ. Մալենկովի զեկուցման նաև մյուս մասերը։

Մեր քաղաքական ագիտացիան ինքնանպատակ չէ, այն պետք է ծառայի պարտիա-

յի ու կառավարության կողմից ժողովրդի առ-
ջև դրված խնդիրների հաջող կատարման
գործին։ Այստեղից էլ միանգամայն պարզ
է, որ մասսայականացնելով ընկ. Մա-
լենկովի զեկուցումը, ագիտատորները այն
պետք է կապեն տվյալ ձեռնարկության,
կոլտնտեսության, ՄՏ կայանի և հիմնար-
կության առջև ծառացած պրակտիկ խնդիր-
ների հաջող կատարման հետ։ Ագիտացիա-
յի միջոցով պետք է բարձրացնել բանվոր-
ների, կոլտնտեսականների, ծառայողների,
ինժեներա-տեխնիկական աշխատողների և
գյուղատնտեսության մեխանիզատորների
աշխատանքային խանդավառությունն ու ակ-
տիվությունը, որը կարևոր նշանակություն
ունի ստալինյան նոր հնգամյա պլանի հա-
ջող կատարման համար։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՈՒ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1. Պարտիայի XIX համագումարը և կոմունիզմի շինարարության խնդիրները մեր երկրում։

2. Սովետական Միության Կոմունիստական Պարտիան ՍՍՌՄ-ում կոմունիզմի շինարարության ոգեշնչողն ու կազմակերպիչն է։

3. ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման խնդիրները նոր հնգամյակում։

4. Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքը նոր հնգամյակում։

5. Խնայողության ռեժիմը՝ հանդիսանում է ժողովրդական տնտեսության հետագա վերելքի կարևորագույն լծակը։

6. Պարտիայի և կառավարության հոգատարությունը սովետական ժողովրդի նյութական բարեկեցության

և կուլտուրական կյանքի մակարդակի բարձրացման համար։

7. Սոցիալիստական մրցությունը՝ հինգերորդ հնգամյա պլանի կենսագործման կարևորագույն պայմանն է։

8. Աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ աճը՝ հինգերորդ հնգամյակի կատարման կարևոր պայմանն է։

9. Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը՝ նոր հնգամյա պլանի կարևոր խնդիրն է։

10. Պետական և աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդումը հանդիսանում է հինգերորդ հնգամյա պլանի կատարման գրավականը։

11. ՍՍՌՄ հինգերորդ հնգամյա պլանը մի նոր խոշոր քայլ է սոցիալիզմից դեպի կոմունիզմ։

12. Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումը նոր հնգամյա պլանի կարևորագույն խնդիրն է։

13. Պարտիայի XIX համագումարի որոշումները՝ կոլտնտեսությունների տնտեսական և կազմակերպական հետագա ամրապնդման մասին։

14. Նոր հնգամյակի հիմնական խնդիրները ապրանքաշրջանառության բնագավառում։

15. ՍՄԿԿ XIX համագումարի դիրեկտիվները պետական և կոոպերատիվ առևտրի հետագա ընդարձակման մասին։



16. ՍՍՌՄ-ն համատարած գրագիտության երկիր է։

17. Սովետական գրականության և արվեստի զարգացումը մեր երկրում։

18. Պարտիայի XIX համագումարի որոշումները և աշխատավորության կոմունիստական դաստիարակության խնդիրները։

## II

## ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ «ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ՍՍՌՄ-ՈՒՄ» ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ

1. Ընկեր Ստալինը տնտեսական օրենքների բնույթի մասին սոցիալիզմի ժամանակ։

2. Ընկեր Ստալինը ապրանքային արտադրության հարցի մասին սոցիալիզմի ժամանակ։

3. Արժեքի օրենքի հարցը սոցիալիզմի ժամանակ։

4. Ընկեր Ստալինը քաղաքի և գյուղի միջև եղած հակադրության ոչնչացման, ինչպես նաև նրանց միջև եղած էական տարբերությունների վերացման հարցի մասին։

5. Ընկեր Ստալինը մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակադրության ոչնչացման և նրանց միջև եղած էական տարբերությունների վերացման հարցի մասին։

6. Ընկեր Ստալինը միասնական համաշխարհային շուկայի տրոհման և համաշխարհային կապիտալիս-

տական սիստեմի ճգնաժամի խորացման հարցի մասին։

7. Ընկեր Ստալինը կոլտնտեսային սեփականության համաժողովրդական սեփականության մակարդակին բարձրացնելու միջոցառումների հարցի մասին։

8. Ընկեր Ստալինը ժամանակակից կապիտալիզմի և սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքների մասին։

9. Ընկեր Ստալինը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պայմանների և ուղիների մասին։

10. Ընկեր Ստալինը կապիտալիստական երկրների միջև պատերազմների անխուսափելիության հարցի մասին։

## III

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1. Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է։

2. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը՝ հայ ժողովրդի մեծ ազատարարներ։

3. Հայաստանում սովետական կարգերի հաստատման 32-րդ տարեդարձը ռեսպուբլիկայի աշխատավորությունը դիմավորում է քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում նորանոր նվաճումներով։



4. Սովետական Հայաստանը ինդուստրիալ արդյունաբերական և կոլտնտեսային առաջավոր գյուղատնտեսական սոցիալիստական ռեսպուբլիկա է։

5. Սովետական Հայաստանը ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկած կուլտուրայի և գիտության երկիր է։

6. Սովետական Հայաստանի հաջողությունները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի կենսագործման գործում։

7. Ծավալել գործարար սոցիալիստական մրցություն՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 32-րդ տարեդարձը ՍՍՌՄ ստալինյան հինգերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանների կատարումով և գերակատարումով դիմավորելու համար։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Կեցցե Սովետական Հայաստանը»: Երկեր, 4-րդ հատոր, էջ 458—459։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում»: Հայպետհրատ, 1952 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարում: «Ագիտատորի բլոկնոտ», № 20, 1952 թ.։

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի 19-րդ հա-

մագումարին: *«Ագիտատորի բլոկնոտ» № 19, 1952 թ.։*

ՍՄԿԿ 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ *(«Մ. Հ.» 1952 թ., հոկտեմբերի 15-ի համարը)։*

ՊԵՐՎՈՒԽԻՆ.—Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը: *Զեկուցում Մոսկվայի սովետի հանդիսավոր նիստում, նոյեմբերի 6-ին («Մ. Հ.» 1952 թ., նոյեմբերի 7-ի համարը)։*

ԳՐ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— *Հաշվետու զեկուցում* Հայաստանի կոմունիստական պարտիայի 16-րդ համագումարում՝ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին:

---

Խմ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

ՎՖ 07864 *Պատվեր 976* *Տիրաժ 10.000*

*Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8*

